# Կարլ Կաուցկիի կեանքն ու գործը

Կարլ Կաուցկի ծնած է Փրակայի ... 16 հոկտեմբեր 1854ին: Կը պատ... ... մտաւորականներու եւ արուես... ... ընտանիքի մը,— մայ... ... Միննա Կաուցկի, մեծ յաջողու... ... ունեցած է թատերաբեմի վը... ... յետոյ գրած՝ ընկերվարական ... վէպեր, մեռած՝ 1912ին:

Կարլ Կաուցկի կանոնաւոր կրթու... ... է ստացած, եւ աւարտելէ վերջ ... ինքզինք նուիրած է ... ընկերվարական շարժումին: Կ'աշխա... ... ընկերվարական թերթերու, ո... ... լոյս կը տեսնէին արտասահմանի ... երբեւ հետեւանք Պիզմարքի ... օրէնքներուն: Շուտով ինք եւս ... հայրենիքը, եւ կ'ապրի ... Լոնտոնի (1885 — 1890), ... (1890 —1897) մէջ:

...

Այն բանէ առաջ հայերէն սորվինք, ... կ'ուենք ապրիլ եւ մնալ հայ ...:

ՊԱՐՄԱՆԻ

գերման ընկերվարական կուսակցու... թեան կեանքը:

Մինչեւ 1918, չուզեց մտնել Ռայ... խսթագ: Զէր երեւար, զինք կարելի էր տեսնել ընդհանրապէս կուսակցու... թեան համագումարներուն ժամանակ, երբ կը նախագահէր նիստերուն: Սը... խալ չէ ըսել թէ Կաուցկի կուսակցու... թեան մտածող գլուխն էր, իսկ բուն վարիչները կը մնային Լիբքնեխտ, Բեբէլ, Սինկէր,— իր ազդեցութիւնը, ըսենք՝ գործունէութիւնը կը սահ... մանափակուէր մտաւորական պայքա... րի մէջ:

Իբրեւ մտաւորական ժառանգ՝ կը թողու բազմաթիւ գիրքեր, գրքոյկ... ներ, ուսումնասիրութիւններ, յօդ... ուածներ, որոնք եթէ քովքովի բեր... ուէին՝ պիտի լեցնէին ամբողջ մատե... նադարան մը: Ճիշդ է թէ իր գործին մեծ մասը կը բաղկանայ «աւուր պատ... շաճի նիւթերէ» կամ «պարագայից յարմար տոմսերէ», բայց եւ այնպէս ...

...

Կարլ Մարքսի, Էնգէլսի մահուընէն վերջ՝ Կաուցկի կը ներկայանար լաւա... գոյն եւ ամէնէն հեղինակաւոր տեսա... բանը մարքսեան փիլիսոփայութեան, ... իրականին մէջ Կաուցկի չի կրկներ Մարքսի տեսակէտները, այլ կ'ընդ...

...

...եւրազմը: Արդէն լոյս տեսած էին ա... ռաջին պրակները, երբ գերման բանա... կը մտաւ աւստրիական սահմանէն ներս եւ ողողեց երկիրը: Կաուցկի հա... գիւ ժամանակ ունեցաւ օգնաւ մը նստիլ եւ փախչիլ Փրակա: Վերջին դէպքերուն վրայ, լքեց նաեւ Փրա... կան, գնաց հաստատուիլ Ամսթէրտա... մի մէջ, ուր աչքերը կը խփէ 84 տա... րեկան, բայց գրիչը ձեռքը:

## Գ ի ր ք ը

Ոչինչ աւելի հաճելի եւ օգտակար է, քան ընտիր գիրքերու ընթերցանու... թիւնը: Գիրքը մեզ կը ծանօթացնէ բո... լոր դարերու մեծագոյն գրագէտնե... րուն հետ, ան մեր իմաստուն առաջ... նորդն է, մեր ամենահաւատարիմ բա... րեկամը եւ երբեք չենք յուսախաբուիր անկէ: Լաւ գիրքը կը խանդավառէ մարդս: Շատ մը մեծագոյն արարք... ներ կատարուած են մեծ մարդոց կեն... սագրութեանց ազդեցութեան տակ: Լուրջ գիրքը կը ճոխացնէ միտքը մը... տածումներով եւ ձգտումներով, գը... լուխը կը լիանայ առանց ծանրաբեռ... նուելու, ինչպէս պիտի ըլլար գինիէն: Գիրքը յաճախ կը զինովցնէ մարդը, բայց առանց մնասելու ...

...

...տարբեր պակասը պիտի կարենանք դարմանել կամ լրացնել մանաւանդ մեր ներկայ պայմաններուն մէջ, գը... խաւորաբար լաւ գիրքերու ընթերցա... նութեամբ:

ՓՐՈՖ. Վ. ՏՈՏՈՄԵԱՆՑ

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

ԱԼՖՈՐՎԻԼ.—Հոկտեմբեր 16ին կի... րակի կէսօրէն վերջ, Հ. Կ. Խաչի մասնաճիւղի նորընտիր վարչութիւ... նը, ի պատիւ իր նախորդին, թէյա... սեղան մը սարքած էր, «Հայ Ակում... բ»ին մէջ, իբրեւ «Վերամուտ»ի առա... ջին ձեռնարկն էր:

Ժամանակէն առաջ հասարակութիւ... նը փութացած էր լեցնել սրահը: Ճիշդ ժամը 3.30ին հանդէսը բացուե... ցաւ Սանուց Միութեան երգչախում... բի կողմէ, «Մեր հայրենիք» ով, ղե... կավարութեամբ Պ. Ս. Ցովհաննէս... եանի:

Ցաջորդաբար սաներէն արտասա... նեցին Պ. Պ. Ս. Նիկողոսեան Հայրենի... կող (Զարմուհի), Յ. Թէնէքճեան «Հայ գրօշին» (Արսէն Երկաթ), Ս. Գարունեան «Էլի կը տեսնես» (Եղիշէ Չարենց), Զ. Մուրատեան «Երկիր իմ, քեզ» (Լեւոն Գուլեան) եւ Օր. Վ. ...

...

## ՄԱՄՈՒԼ

### Դ Է Պ Ի Ա Ն Գ Ա Ր Ա . . .

1 Պէյրութի «Ազդակ»ը հետեւեալ խորհրդածութիւնները կ'ընէ այս խո... րագրով խմբագրականի մը մէջ (9 Հոկտ.).

— «Մեզի կը հաղորդեն թէ երեսփո... խանական պատուիրակութիւն մը կը պատրաստուի երթալ Անգարա, Հոկ... տեմբեր 29ի տօնին առթիւ Աթաթիւր... քին ներկայացնելու համար ժողո... վուրդին յարգանքը:

Միաժամանակ կը պատմեն թէ պատուիրակութիւնը պիտի խնդրէ Սանճաքի կցումը Թուրքիոյ: Բայց մէկ կողմ դնենք այս զրոյցը իբրեւ անհաւատալի, եւ զբաղինք միայն ա... ռաջին պարագայով որ անվիճելի իրո... ղութիւն է: Որովհետեւ, բուն իսկ «Ենի Կիւն» ամէնառաջ գրեց թէ կարդ...

...

տարակոյս չունենանք — այս խմաս... տով խօսքեր պիտի դնէ անոնց բերա... նը, «խաթէրուդ» պտտել պիտի տայ չատերու, մանաւանդ ոչ - Թուրքերու եւ ամէնէն առաջ Հայերուն:

Կասկած չկայ նաեւ թէ Թուրք կա... ռավարութիւնը հիմակուընէ պատ... րաստել եւ զոց ըսել տուած է այն ճա... ռերը, զոր պիտի կարդան «Հաթայ»ի երեսփոխանները եւ մանաւանդ Հայե... րը: Եւ այդ ճառերը լայնօրէն պիտի շահագործուին թրքական մամուլին կողմէ, իբրեւ ոչ - Թուրք տարրերուն «ինքնաբուխ» արտայայտութիւնը, իբրեւ նոր փաստ մը թէ «Հաթայ»ը երէկ դժոխք էր, իսկ այսօր դարձած է կատարեալ դրախտ, ուր գայլն ու գառնուկը միասին կը ճարակեն, եղբա... նաւէտ համերաշխութեամբ:

Մէջտեղն է պատմութիւնը այն ճա... ռերուն որ խօսուեցան խորհրդարանի բացման նիստին: Իսա Գազանճեաննե... րուն ըսել տուին թէ հայը «թրքա... ...

...

## ...ԵՐԿՆԻ ՊԱՏԿԵՐՆԵՐ

# Զ Ի Ի Ն Ա Մ Ր Ր Ի Կ

Կ'ենթադրեմ, որ մեր դուրս գալու ...ն, օդը պարզ պէտք էր ըլլար, ...րովհետեւ երկնակամարին վրայ ...ղեր տեսած ըլլալս կը յիշեմ: Կար ...եւ պաղ քամի մը, ոչ այնքան ան... ...: Բայց սարալանջին կէսէն ա... ...բարձրացած էինք, երբ այդ քա... ...յանկարծ դժուեցաւ, ժայռերուն ...ցաններուն քսուելով մեզ անծա... ...սուլումներ արձակեց եւ չըջա... ...փափուկ ձիւնը վերցնելով, ... մեր չուրջը խելադարի նման ... դալ: Վեր ...

կէս ժամէն կը հասնինք, յարեց Ռու... բէն, դե՛հ տղերք, ձեզ մեռնիմ:

Քալելու մէջ վարժ էի ես, բայց պէտք է խոստովանիմ որ բաւական յոգնած էի, եւ քայլերս արագացնե... լու փոխարէն, քիչ մը հանգստանալու կարիք կը զգայի, եւ կարծեմ որ, մեր ընկերներէն ամէն մէկը նոյն վիճակին մէջ էր, բայց չէր ղիջաներ քովինին հաղորդել: Ստով մէկտեղ սախպուե... ցանք մեծ ճիգով արագ քալել:

Համատարած մշուշին մէջէն, տա...

...

